LXXIV. JHRG. 1960 ԱՊՐԻԼ–ՅՈՒՆԻՍ ԹԻՒ 4–6
ՀԴ. ՏԱՐԻ APRIL–JUNI HEFT

# HANDES AMSORYA

## ZEITSCHRIFT FUR ARMENISCHE PHILOLOGIE

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



### INHALT



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ՆՊԱՍՏՈՎ ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ
PUBLISHED WITH THE SUBVENTION OF THE CALOUSTE GULBENKIAN FOUNDATION
PUBLIÉ AVEC SUBVENTION DE CALOUSTE GULBENKIAN FONDATION

ՎԻԵՆՆԱ – ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

Herausgeber, Eigentümer und Verleger:
Mechitharisten-Kongregation in Wien, VII., Mechitharistengasse 4
Druck der Mechitharisten-Buchdruckerei — Für den Inhalt verantwortlich: P. Mesrop Habozian
Alle Wien VII., Mechitharistengasse 4

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ԹԻՒ 4—6 ԱՊՐԻԼ—ՅՈՒՆԻՍ ՀԴ. ՏԱՐԻ 1960


## ՀԱՅԱՍՏԱՆ ԻԲՆ ԲԻԲԻԻ ՀՈՄԵՄՈՑ

Հերբերտ Դուդա, Վիեննայի Համալսարանի Արեւելեան լեզուներու ուսուցչապետը, 1959ի սկիզբները չնորհիւ Munksgaard / Kopenhagen Դանիմարկայի հրատարակչական տան, լոյս ընծայած է Իբն Բիբիի «Սելճուկեան Պատմութիւնը» գերմաներէն թարգմանութեամբ[1]:

Իբն Բիբի Պարսիկ ազնուական տոհմէ կը սերէր: Հայրը՝ Մաջդուդդին Մուհամէդ Թարգման, դիւանադպիրն էր հռչակաւոր Խուարեզմչահ Ջալալեդդինի: 1231ին երբ Ամիդի մօտ Մոնկոլները չարաչար պարտութեան մատնելով անոր իշխանութեան վերջ տուին, Իբն Բիբիի ծնողքը կ'ապաստանին Մալիք Աշրաֆի մօտ Դամասկոս: Յետոյ Սուլտան Ալայեդդինի հրաւէրով կ'երթան անոր արքունիքը Կոնիա նոյն պաշտօնով: Իբն Բիբիի մայրը իբր գիտնական կին, եզական դէմք մըն էր նոյն դարուն: Ան հմուտ էր մանաւորապէս աստեղագիտութեան, զոր ուսած էր իր հաւուն՝ հռչակաւոր իրաւագէտ Մուհամէդ Բ. Եահեայի մօտ:

Իբն Բիբիի բուն անունն էր Հիւսէին որդի Մուհամէդի, որդի Ալի Ջաֆարի առՌուղադի: Իր կեանքի մասին անդրադոյն ծանօթութիւններ կը պակսին: Ամէն պարագային լաւագոյն կրթութիւն ստացած է իր ծնողքէն եւ կարդացած իր հայրենի գրականութեան գլուխ – գործոցները, մանաւանդ Ֆիրդուսիի Շահնամէն, որուն ազդեցութեան տակ կը ձեռնարկէ գրել Սելջուկնամէ մը «al-Awāmir al-'Alā'īja fi'l-umūr al-'Alā'īja» 'տիտղոսին ներքեւ, այսինքն Ալայ(եդդին Աթա Մալիք Ջուվանիի) հրամանով գրի առած է Ալայ(աեդդին Քայքոբադի) գործերը:

Իր պատմութիւնը կ'ընդգրկէ 1192 – 1280 թուականներու դէպքերը Սելջուկեան սուլտաններու: Ընդարձակագոյն մասը կը բռնէ Ալայեդդին Քայքոբադի շրջանը: Իբն Բիբիի գիրքը մեր ձեռքը հասած է երկու ձեւով, ընդարձակ եւ համառօտ: Առաջինը բուն հեղինակին գործը կը ներկայացնէ, իսկ երկրորդը հեղինակին կենդանութեան անծանօթ անձի մը կողմէ կատարուած համառօտագրութիւն մըն է: Իբն Բիբիի երկն ըստ ինքեան դիւցազներգութեան նկարագիր ունի: Ամէն բան չափազանցուած՝ եւ արեւելեան գունագեղ պերճութեամբ նկարագրուած են իր դիւցազներու քաջագործութիւնները: Համառօտագրութեան հեղինակը ջանացած է, ինչպէս ինքը կը խոստովանի, այդ չափազանցութիւնները յապաւել, սակայն եւ այնպէս իր գործին մէջ ալ կը մնայ դիւցազներգական նկարագիրը գրեթէ անաղարտ: Այս համառօտագրութիւնն է որ թարգմանած է Դուդա: Որքան ալ միակողմանի եւ ներբողական գրութիւն մըն է, սակայն եւ այնպէս ականատեսի կողմէ գրի առնուած պատմական մեծարժէք գործ մըն է: Կը բովանդակէ իր մէջ պատմական կարեւոր դէպքեր եւ աշխարհագրական նկարագրութիւններ, որոնք առ հասարակ տեղի ունեցած են պատմական Հայաստանի, Կիլիկիայի եւ Փոքր Ասիայի մէջ: Ուստի, կարծեմ, աւելորդ աշխատանք մը պիտի չնկատուի, եթէ այստեղ ամփոփելով առաջ բերենք Հայաստանի եւ Հայոց պատմութեան հայող կէտերը:

---

### ՂԻԱՍԵԴԴԻՆ ՍՈՒԼՏԱՆԻ ՀԱՆԴՊԻՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ (էջ 23)

Լեւոն թագաւորն[2] երբ կը լսէ թէ, սուլտանն Հայաստան կու գայ, խսկոյն ընդ առաջ

---

[1] *Herbert W. Duda*, Die Seltschukengeschichte des Ibn Bībī Munksgaard. Kopenhagen 1959 էջ XVII+366.

[2] Իբն Բիբիի բնագրին մէջ բառական կը գործածուի Լիֆոն Թագֆոր لفون تكفور Հայ կիլիկեան թագաւորներու համար, նոյն իսկ ուրիշ քրիստոնեայ թագաւորներու համար հայ թագաւոր բառը կը գործ–

կ'երթայ եւ մեծ պատիւներով զինք կ'ընդունի եւ վեց ամիս իր մօտ կը պահէ: Այստեղէն կը մեկնի յետոյ Ալբիստան, ուր չի մնար երկար: Կ'անցնի Ամիդ եւ ապա Ախլաթ, ուր կ'իշխէր Մալիք Բալաբան: Մեծ պատիւներով կը հիւրասիրուի այստեղ, ուսկից ճամբայ կ'ելլէ դէպի Ծանիկ, ուր նաւ նստելով կ'երթայ Պոլիս (էջ 27):

## ՌՈՒՔՆԵԴԴԻՆ ՍՈՒԼՏԱՆԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ ԴԷՊԻ ՎՐԱՍՏԱՆ ԵՒ ՆԱՀԱՆՋԸ (էջ 36)

Ռուքնեդդին Սելջուկեան պետութեան միահեծան տէր դառնալէն յետոյ կը խորհի ոխը սրտին մէջ արշաւել Վրաստան Թամարի դէմ, որ ժամանակին իր ձեռքն ուզած էր եւ ինքն իբր իսլամ դարշանքով մերժած էր այդ առաջարկը: Հսկայ բանակ մը ոտքի կը հանէ եւ հրաւէր կ'ուղղէ չրջակայ թագաւորներու եւ իր եղբայրներուն: Իրեն օգնութեան կու գան Ալբիստանի տէրը՝ իր եղբայրը Մուղիթէդդին Տուղրուլշահ, իր փեսան Մալիք Ֆախրեդդին Բահրամշահ Երզնկայի ամիրան, Մենգիւջեան Ղազիի սերունդէն, որ իր անբասիր վարքով, գթառատ սրտով ու քաղցրութեամբ ամէնէն յարգուած էր: Իր իշխանութեան օրով (1168-1225) ոչ մի հարսանիք եւ կամ սուգի հանդէս տեղի չէր ունենար, երբ իր կողմէ կերակուր կամ խորտիկ իր խոհանոցէն չգար, եւ կամ ինքն անձամբ իր ներկայութեամբ չպատուէր: Զմեռ ժամանակ իսկ իր ամբարներէն ցորենի կառքեր կ'ուղարկէր ամայի վայրեր թռչուններու կեր ու սնունդ մատակարարելու համար: Իսկ Էրզրումի ամիրան, Սալդուկեան ցեղէն, Ալայեդդին կը ջանայ խոյս տալ ամէն կերպով անոր օգնելէ: Այս պատճառով Սուլտանը զինքը վար կ'առնէ եւ անոր երկիրը կու տայ Մուղիթեդդին Տուղրուլշահի: Եւ անհամար զինուորներով յառաջ կը խաղայ դէպի Աւխազներու երկիրը: Անհաւատները մեծ բազմութեամբ ընդդէմ կ'ելլեն: Երկուստեք սաստիկ կռիւներ տեղի կ'ունենան եւ բազմաթիւ մահեր: Մինչ Սուլտանը կը յուսար թէ թըշնամին պարտութեան պիտի մատնէր, ձախող աստղը զինքը կը հարուածէ եւ բովանդակ բանակով չարաչար պարտուած փախստական կը հասնի Էրզրում: Ուր իր վէրքերէն ապաքինած կը վերադառնայ Կոնիա: Այստեղ երբ կրկին կը պատրաստուէր իր պարտութեան վրէժն առնել, կը մեռնի 1204 Օգոստոս 29ին:

## ԻԶԶԷԴԴԻՆ ՔԸԼԸՃ (ԽԼԻՃ) ԱՐՍԼԱՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՕՐԵՐԸ (էջ 36–50)

Ռուքնեդդինի մահուան վրայ իր երեք խորհրդականները Նուխ Ալփ, Էմիր Մենդէ եւ Թոռնիկ[3], որոնք Թոքատ կը գտնուէին, իսկոյն արքունիք գալով գահ կը բարձրացնեն անոր անչափահաս որդին Իզզեդդին Քըլըճ Արսլան, եւ որուն խնամակալութիւնը նոյնպէս իրենք կը ստանձնեն: Իսլամ թագաւորները, Հռոմի կայսրները եւ Հայաստանի թագաւորները կը ճանչնան զինքը եւ մեծամեծ ընծաներով կը պատուեն անոր գահակալութիւնը (36): Միայն երեք սահմանապահ իշխաններ՝ Եաղըբասանի երեք որդիները, զինք սուլտան չեն ճանչնար. գաղտնի կը կանչեն Զաքարիա սենեկապանը, որ շատ նշանաւոր եւ քաջ մարդ էր եւ բոլոր լեզուներու տեղեակ, կը խնդրեն որ երթայ հրաւիրէ Ղիասեդդին սուլտանն իր հայրենի գահը գրաւելու համար: Զաքարիա կրօնաւոր ձեւանալով կը յաջողի ներկայանալ Սուլտանին Մաւրոզոմէի իշխանութեան երկրին մէջ, ուր կը գտնուէր ան: Իբր ծանօթ սուլտանին սիրով կ'ընդունուի անոր կողմէ Զաքարիա, եւ կը պատմէ թէ ինչպէս Ռուքնեդդին չարաչար պարտութիւն կը կրէ Ափխազիայի դէմ կատարած արշաւանքին մէջ եւ թէ ինչպէս կը մեռնի: Սուլտանն ուրախացած կ'որոշէ վերադառնալ ու գրաւել սելջուկեան գահը (36–39):

1206ին Փետրուար 11ին կրկին կը բարձրանայ Սելջուկեան գահին վրայ եւ 1207ին Մարտ 3ին կը ձեռնարկէ աշաւանք մը Անտալիայի Ֆրանքներու դէմ: Այլուստ մեզի ծանօթ է թէ Ղիասեդդին 1208–9ին միանալով Ալ–Զահիրի հետ յարձակում կը գործէ Կիլիկիայի վրայ եւ կը գրաւէ Բերդուս կամ Բարդունք բերդը (Գրուսէ, Պատմութիւն Խաչակրաց. հտր. Գ. էջ 259–60):

Ղիասեդդին 1211 Յունիս 15ին Լասկարիսի դէմ մղած պատերազմին մէջ կը մեռնի

ածէ նաեւ համառօտագիրը, համեմատէ անդ էջ 66–67 (Կիռ Ալէքսի Սինոպի թագաւորին համար մի քանի անգամ գործածած):

[3] Դուդա անծանօթ հայ Թոռնիկ անուան, կը ծանօթագրէ թէ Թոռնիկ հաւանաբար յոյն Τορνήκης հետ նոյն է: Իբն Բիբի առ հասարակ Հայ իշխաններու անունները հարազատ ձեւով կը ներկայացնէ, ինչպէս այստեղ تورنيك (տես էջ 36 ծն. a):

եւ իրեն կը յաջորդէ իր երէց որդին Իզզեդդին Քայքաուս, որ Մալաթիայի մալիքն էր (47–50) :

## ԿԵՍԱՐԻԱՅԻ ՊԱՇԱՐՈՒՄԸ (էջ 51–58)

Իզզեդդինի եղբայրը, Ալայեդդին Քայքոբադ, լսելով իր հօր մահը, իսկոյն իր մօտ կը հրաւիրէ Էրզրումի մելիքը՝ Մուղիթեդդին Տողրուլշահ իր հօրեղբայրը, որուն հետ լաւ յարաբերութիւն ունէր, եւ կ'ուղարկէ Հայոց Լեւոն թագաւորին, անոր օգնութիւնը խնդրելու համար, որուն փոխարէն կը խոստանար անոր տալ Կեսարիա : Հայոց արքան սիրով յանձն կ'առնէ, եւ միասնաբար կը պաշարեն Կեսարիա քաղաքը, ուր կը գտնուէր նոյն ժամանակ նորընտիր սուլտանը : Մինչ վերջինս յուսաբեկ կը պատրաստուէր փախչիլ Կոնիա, Կեսարիայի կուսակալը, Ջալալեդդին Քայսար, մութ գիշերին, պարուակով մը կը դիմէ սուլտանին մօտ : Երկար խորհրդակցութենէ յետոյ սուլտանին քրոջ շատ թանկագին դաստառակը (destarče), որ 12,000 ոսկի դենար կ'արժէր, առած նոյն գիշերն իսկ միակ պահակի մը հետ կը դիմէ Հայոց Լեւոն թագաւորին, որուն հետ առաջ լաւ յարաբերութիւններ ունէր : Թագաւորին կը ներկայացնէ սուլտանին նուէրը եւ կը խնդրէ բարեկամութեան դաշինք մը կնքել, որուն համեմատ սուլտանը կը խոստանար 12,000 Mudd ցորեն տալ Հայոց ամրոցներուն եւ ճանչնալ անոր տէրութեան սահմանները եւ ոչ մի ժամանակ վնաս հասցնել Հայոց երկրին, պայմանով որ թագաւորն ալ փոխադարձ պահէ դաշինքը : Երկուստեք համաձայնութիւնը կը կնքուի : Եւ Լեւոն անմիջապէս հրաման կ'ընէ բանակին, վերցնել քաղաքին պաշարումը : Նոյն գիշերն իսկ ուղտերը բեռնաւորած հայ բանակը կը մեկնի եւ առաւօտ իսկ հայկական սահմաններուն վրայ կը գտնուէր : Լուսաբացին Ալայեդդին եւ Տողրուլշահ վերահասու կ'ըլլան իրողութեան եւ յոյս չունենալով թէ պիտի կարենային առանձին սուլտանի հետ գլուխ ելլել, իրենք ալ կը վերցնեն պաշարումը եւ կը մեկնին, մին Անկարա, իսկ միւսն իր երկիրը Էրզրում :

Սուլտանին սպարապետը Զայնեդդին Բիշարա պատգամաւորներ կ'ուղարկէ Հայոց Լեւոն թագաւորին հաղորդելու համար թէ սուլտանին վերին իշխանութիւնն ամենուրեք հաստատուած է : Լեւոն ընծաներով իր խընդակցութիւնը կը յայտնէ (էջ 55) :

## ՍՈՒԼՏԱՆԻ ԴԷՊԻ ՏԱՐՍՈՆ ԱՐՇԱՒԱՆՔԸ (էջ 70–71)

Սուլտան Իզզեդդին իր գահին վրայ հաստատուելէն յետոյ կը ձեռնարկէ իր աշխարհակալութիւնն ընդարձակել, նախ յարձակելով Սինոպի վրայ, որուն թագաւորն էր Կիռ Ալէքս (Ալէքս Ա· Կոմնենոս Տրապիզոնի կայսրը) :

Սինոպի գրաւումէն յետոյ 1 Նոյեմբեր 1214ին կը դառնայ Կեսարիա, ուր ձմեռը կ'անցնէ եւ գարնան կը լսէ դանդատներ Լեւոնի մասին, թէ դաշինքը չի պահեր : Կ'ուզէր իսկոյն արշաւել անոր երկիրը, սակայն իր զօրավարները խորհուրդ չեն տար այս ջերմ օրերուն պատերազմի ձեռնարկել :

Աշնան սկիզբը կը հրամայէ իր բանակին հրամանատարներուն, որոնք կազմ եւ պատրաստ էին քալել դէպի հայկական Կիլիկիա : Ահագին բազմութեամբ Կուսիդերէի վրայէն կը մտնէ Կուրկին (այժմ Körküm Su?) : Թագաւորը (Tekvur) լսելով սուլտանի մուտքն իր սահմանները, ուրիշ միջոց չունէր խորհելու, բայց եթէ հաւաքել իր բովանդակ ուժերը, սուլտանին դիմադրելու համար :

## ՋԻՆՋԻՆ ԲԵՐԴԻՆ [جنجين] ՊԱՇԱՐՈՒՄՆ ՈՒ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 71–74)

Սելջուկեան բանակն անցնելով սահմանը կը հասնի Ջինջին[4] ամրոցը, որուն համար կ'ըսեն, թէ ամէնէն ամրագոյն է : Ստիպուած էր սուլտանի բանակն այդ եւ երկրորդ բերդ մը Կանջին[5] (Կանչին) պաշարման ենթարկել :

---

[4] Հետեւելով Դուդայի ուղղագրութեան Ğinğin տառադարձեցինք Ջինջին, սակայն նկատի ունենալով որ Բիբի հայ աշխարհագրական անուններն ու հասարակ կիլիկեան բարբառի արտասանութեամբ կը ներկայացնէ, կարելի է ապահովապէս Ջինջին ձեւն ուղղել Ճանճինի, որ կը յիշուի հայ պատմագիրներէ եւ նաեւ ձեռագրական տարբերակները նոյնը կը հաստատեն հմմտէ· Անդ էջ 71 ծն· cf. Houtsma, Recueil III. p. 143, 20 գրուած جنجين կարդալ Ճանճին = Čančin.

Այս ամրոցիս մասին տես Հ· Ղ· Ալիշան, Սիսուան, Վենետիկ 1885 էջ 194 :

[5] Հայ մատենագիրներու մօտ նոյնպէս կը յիշուի Կանչոյ բերդ մը, որքան ալ այստեղ Դուդա Kānğin ձեւն ընտրած է սակայն ուղիղ ձեւը պահուած է Houtsma Recueil III. p. 144, 21 كانچين հմմտէ Անդ

Քարաձիգ մեքենաներ անողոք կերպով կը հարուածեն երեք օր երեք գիշեր Ջինջին ամրոցը: Մեծամեծ կոտորած տեղի կ'ունենար: Ամրականները կը խնդրեն երեք օր պայմանաժամ, յուսալով թէ Լեւոն իրենց օգնութեան կրնար հասնիլ: Սակայն Թագաւորը լուր կը ղրկէր թէ ինքն իսկ կարօտ էր օգնութեան: Երեք օր յետոյ բերդականներն անձնատուր կ'ըլլան սուլտանի բանակին: Կարգն եկած էր Կանչին բերդին, որ լաւ ամրացուած էր: Սելճուկները սաստկակոծ ռմբակոծելէ յետոյ կը յաջողին երկար սանդուղներով բարձրանալ պարիսպներուն վրայ եւ գրոհով մը խուժել ամրոցին մէջ: Սոսկալի կոտորածով ու արիւնի հեղեղով կ'ողողուի անհաւատներու (քրիստոնեաներու) ամրոցը եւ կը բացուին դուռները: Ներս կը մտնէ կատաղած բանակը եւ կը սկսի ահեղ կոտորած, կողոպուտ եւ գերեվարութիւն:

Այնուհետեւ կռիւը կը շարունակեն բուն իսկ անիծուած Լեւոնի դէմ, որ թէեւ վարանքով եւ անձկութեամբ լեցուած, սակայն կը ճակատէր իրենց դէմ: Ամիր – Մաջլիս, որ առաջապահներու հրամանատար էր, 3000 այրուձիով կը փորձէ լռեցնել Լեւոնի բանակը: Առանձին մէկ երկու հոգիով, ծպտուած կ'առաջանայ անհաւատներու բանակին մօտերը: Ցանկարծ ասոնց յարձակումին կ'ենթարկուի: Ամիրի զինուորները տեսնելով իրենց զօրավարը վտանգուած, իսկոյն օգնութեան կը փութան եւ թշնամին հալածելով կ'ազատեն զինքը: Ամիր–Մաջլիս կը դառնայ իր բանակետղը եւ խորհուրդ կու տայ իր ընկերներուն անմիջապէս յարձակումի ձեռնարկել: Գոռում գոչումով, փոթորկի պէս կը խոյանան Լեւոնի բանակին վրայ: Լեւոն ալ իր ընտիր բանակը ճակատ հանած էր, առաջնորդութեամբ Պարոն Վասիլի, Պարոն Օշինի եւ սպարապետին (Կոստանդին), որոնք իր բանակին սիւներն էին եւ միանգամայն անոր յոյսը: Առաջին յարձակումին իսկ կը յաջողի Ամիր–Մաջլիս գերի բռնել սպարապետը եւ միւս բարոնները Օշին ու Նոշին: Մինչեւ երեկոյ պատերազմը կը շարունակուի: Լեւոն փախուստի կը դիմէ իր մնացած բանակով: Գիշերը կը հանգչին: Առաւօտ կը հետապնդեն Թագաւորին բանակը: Եւ երբ կը տեղեկանան թէ Լեւոն ամրացած է իր անառիկ բերդին մէջ, կ'ասպատակեն ամէն կողմ, կ'աւերեն, կը կողոպտեն եւ անթիւ աւար եւ գերի հաւաքած կը վերադառնան իրենց երկիրը: Աւարն այնքան շատ էր որ Կեսարիայի մէջ եզ մը կամ արջառ մը երկու դահեկանի կը վաճառուէր, իսկ գեղատեսիլ հայ պատանի մը կամ աղջիկ մը յիսուն դահեկանի (էջ 70–74):

էջ 72, ծն. c: Այս բերդի մասին ալ տես Ալիշան, անդ էջ 194:

## ԼԵՒՈՆԻ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ԵՒ ԱՆՈՐ ԽՆԴՐԱՆՔԻ ՄԱՍԻՆ (էջ 75–76)

Պարտութենէն յետոյ Լեւոն ժողովի կը հրաւիրէ իր իշխանները եւ անոնց հետ կը խորհրդակցի թէ ինչ կերպով պէտք էր գերի իշխաններն ազատել: Մեծամեծ ընծաներով կ'ուղարկէ ճարտար դեսպաններ սուլտանին մօտ, կը յայտնէ իր հպատակութիւնը, յանձն կ'առնէ տարեկան կրկին հարկ վճարել փոխան տաս հազարի, քսան հազար դենար, եւ որոշուած քանակին վրայ 500 ձիաւոր ալ աւելի տրամադրել սուլտանին հրամանին կազմ եւ պատրաստ: Այս պայմանները հաճոյ կը թուին սուլտանին: Իր արքունի հազարապետը Դիայեդդին Կարա Արսլան կ'ուղարկուի Լեւոնի, համաձայնութիւնը կնքելու համար: Լեւոն (Lifon) մեծարանքով կ'ընդունի դեսպանը, կը կնքեն դաշինքը, կը վճարէ 10 հազար դենար բաց մնացած տուրքը եւ կանխիկ 10 հազար վեցամսեայն ալ եւ մեծամեծ ընծաներով ճամբու կը դնէ սուլտանին դեսպանը: Այսպէս կը վերահաստատուի երկու երկիրներու մէջ խաղաղութիւնը: Սուլտանը հրաման կ'արձակէ ամէն կողմ ապահովել առեւտուրի եւ երթեւեկի ազատութիւնը երկու երկիրներու մէջ եւ ազատ կ'արձակէ գերի իշխանները (էջ 75–76):

## ԱԼԱՅԻԱ ԱՄՐՈՑԻՆ ԳՐԱՒՈՒՄԸ ՍՈՒԼՏԱՆ ԱԼԱՅԵԴԴԻՆԻ ԿՈՂՄԷ (էջ 104–109)

Ալայեդդինի գահակալութեան խնճոյքները վերջանալէ յետոյ, սուլտանը կը հրաւիրէ իր մեծամեծներն իր մօտ եւ կ'ըսէ, այժմ ժամանակն է ուրախութիւններու վերջ տալ եւ պատրաստուիլ պատերազմի: Անտալիա ձեռք բերինք, կ'ըսեն իշխանները, սակայն Կալոնորոս բերդը՝ անողոք բարձունք մը, որուն մօտ երկինք պարզ հարթավայր մըն է, ամրոց մըն է, որ ծովն իբր խրամատ ունի, մարմարի սեպ ժայռ մը իբր պարիսպ,

իսկ ցամաքի կողմէ իշխանութիւն մը Սիսի արքայական սահմաններու վրայ: Այսպիսի աթոռանիստ վայր մը կը վայելէ արքայի մը, որ ապաստանարանն է աշխարհի»:

Այս խօսքերը հաճելի կ՚ըլլան սուլտանին, եւ կը հրամայէ զօրաժողով ընել եւ յարձակիլ բերդին վրայ: Երկու ամիս անընդհատ կը ռմբակոծեն պաշարող մեքենաները: Բերդին տէրը (Kir Farid) Կիռ Վարդ վերջ ի վերջոյ կը տեսնէ թէ դժուարաւ պիտի կարենար ահեղ բանակին առջեւ պաշտպանել իր ամրոցը, պատգամաւորներ կ՚ուղարկէ սուլտանին խոստանալով անոր յանձնել բերդը եթէ հաճի իրեն չվնասել, եւ տալ նաեւ ապաստանարան մը կամ երկիր մը, ուր ինք խաղաղ իր կեանքն անցնել կարենար: Սուլտանն անոր փափաքը կը կատարէ պայմանով մը, որ Կիռ Վարդ իր աղջիկը կնութեան տայ իրեն, որպէսզի խնամութեամբ աւելի վստահութիւն գտնէր իր մօտ: Համաձայնութիւնը կը կնքուի, Կիռ Վարդ իր դուստրներէն մին սուլտանի կնութեան կու տայ, կը յանձնէ ամրոցը եւ փոխարէն կ՚ընդունի Աքչէհիրի, Կոնիայի մօտ, Ամիրութիւնը եւ շատ մը գիւղեր իբր կալուած (104–109):

## ԱԼԱՐԱՑ ԲԵՐԴԻ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 109–110)

Ալայիա քաղաքին եւ ամրոցի գրաւումէն եւ վերաշինութենէն յետոյ, սուլտանն իր արշաւանքը կը շարունակէ դէպի Անատոլիա: Ճամբան իր ուշադրութիւնը կը գրաւէ Ալարա բերդը, ուր կ՚իշխէր Կիռ Վարդի եղբայրը, որ սակայն ընդգրկած էր կրօնաւորական վիճակը: Սա վախնալով սուլտանի հզօր բանակէն առանց կռուի կը յանձնէ ամրոցն անոր (109–110):

## ՋՄՇԿԱԾԱԳԻ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 124–126)

Ամիր Ասադեդդին, Գունդստաբլը, որ Մալաթիայի կուսակալն էր, հրաման կը ստանայ սուլտանէն, գրաւել Ջմշկածագ ամրոցը: Ժայռի մը կը նմանի ան, որուն գլուխը կը բարձրանայ մինչեւ երկինք, եւ որուն մէջ կայ կարծես Աստուծմէ յատուկ կերպով ստեղծուած քարայր մը: Ստորոտէն կը հոսի գետ մը, որ Նեղոսի մը արժէք պիտի չտար: Այս գետին եզերքին կը բարձրանայ քաղաք մը, որ այնպէս անմատչելի եւ անառիկ է, ինչպէս բերդ մը, եւ որուն հիմերն արտաքոյ կարգի ամուր եւ հաստատուն էին: Պայքարի մտնել այսպիսի ամրութեան մը հետ, որուն բարձունքին վրայէն արծիւն իսկ չի համարձակիր սաւառնիլ, եւ ուր ականահատ զինուոր մը ոչ մի տկար տեղ կրնայ գտնել, անհնարին է: Առ առաւելն խոստումներով կամ սպառնալիքներով կարելի պիտի ըլլար այդպիսի վայր մը հպատակութեան յորդորել: Սակայն եւ այնպէս ամէն միջոց պիտի գործադրուի անոր գրաւումն իրագործելու համար:

Սպարապետը դեսպան կ՚ուղարկէ անոնց յորդորելու զանոնք առանց արիւնահեղութեան յանձնել քաղաքը, օրինակ տալով մի քանի օր առաջ գրաւուած Կախտա բերդի արիւնահեղ դէպքը Ամիդի մօտերը: Սակայն բնակիչներն եւ ոչ իսկ դեսպանին թոյլ կու տան մերձենալու պարիսպին: Այն ժամանակ կը հրամայէ սելջուկ զօրավարն ամբողջ ուժով գանակոծել քաղաքը: Ութ օր ութ գիշեր անընդհատ կը շարունակուի ռմբակոծումը, սակայն առանց արդիւնքի: Բերդէն նետերու հեղեղ մը կը տեղար Սելջուկ բանակին վրայ: Սպարապետն յուսահատ վիճակ մը ունէր, եւ չէր գիտեր թէ ինչ միջոցներով հնար պիտի ըլլար գրաւել բերդը: Ճիշդ այդ միջոցին իրեն կը ներկայանայ գեղեցիկ երիտասարդ մը եւ կ՚ըսէ, «Անցեալ գիշեր երբ կը շրջէի բերդին շուրջ, նշմարեցի ճեղք մը քարայրին մօտ: Եթէ ականահատներ այնտեղ գործի ձեռնարկեն, կարծեմ թէ պիտի յաջողինք գրաւել ամրոցը»: Ասադեդդին անմիջապէս կը հրամայէ 15 քաջ ականահատներու գործի լծուիլ: Կարճ ժամանակէն մեծ բացուածք մը կը բանան, ուսկից անխուլն ներս կը խուժեն քաջ մարտիկներ, մինչ գլխաւոր բանակը նետերու տարափ մը կը տեղացնէր ամրոցին վրայ: Բերդականներու դիմադրութիւնը տակաւ կը նուազէր: Քարայրի բացուածքէն ներս մտնողներու թիւը կ՚աւելնար եւ հետզհետէ ամուր վայրերը կը գրաւուէին Սելջուկ բանակին կողմէ: Ամրոցի պաշտպան զօրութիւնը կը տեսնէ անել վիճակը եւ բանակցութեան կը մտնէ Գունդստաբլի հետ: Բաւական արիւնահեղութենէ յետոյ բերդը անձնատուր կ՚ըլլայ յաղթողին (էջ 124–126):

## ԱՐՇԱՒԱՆՔ ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ (ԿԻԼԻԿԻԱ) ԵՒ ԲԵՐԴԵՐՈՒ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 140–142)

*Ալայեդդին Քայքոբադ սուլտանի հրամանով Կիլիկիայի վրայ կ'արշաւեն Մուբարիզեդդին եւ Կոմնինոս զօրավարները։ Նեղ կիրճէ մը կ'անցնին ու կը մտնեն անտառ մը։ Ամէն կողմ բնակութիւններ եւ ամրոցներ կը տեսնեն իրենց առջեւ։ Հարկ էր նախ այդ ամրոցները գրաւել, աւելի առաջ շարժելու համար։ Առաջին բերդը, որ իրենց առջեւ կը ցցուէր Ջինջին* (Ĉingin) *էր, անառիկ եւ անմատչելի ամրոց մը։ Հրաման կ'արձակուի փութով պաշարել եւ խոյերով ռմբակոծել։ Ամրոցի բնակիչները նամակով մը կը պարզեն Լեւոնի*[6] *իրենց կացութիւնը եւ կը խնդրեն օգնութիւն։ Լեւոն (Կոստանդին) կը դիմէ Փրանկներու, որոնք ընդառաջ կու գան անոր կոչին։ Մինչ սուլտանին բանակը լեռներու վրայ դրած էր իր բանակատեղը, Լեւոն եւ Փրանկներու զօրքերը կը գտնուէին հարթավայրի վրայ։ Գիշերը խաղաղ կ'անցնի, առաւօտ Սելջուկներու յարձակումով պատերազմը տեղի կ'ունենայ։ Երկուստեք յամառութեամբ կը մղուի կռիւը։ Երեկոյեան դէմ սուլտանի բանակը կը յաջողի փախուստի մատնել թշնամին։ Մեծ աւարով ու գերիներով կը դառնան սելջուկները իրենց բանակատեղին։*

*Բերդի բնակիչները տեսնելով պատերազմի ելքը կը տրտմին եւ կը խռովին։ Յաջորդ առաւօտ կրօնաւոր մը կու գայ հրամանատարին ու կը խնդրէ իմանալ այն պայմանները, որով պիտի պարտաւորուէին ամրոցն յանձնել իրեն։ Մուբարիզեդդին կը պահանջէ յանձնել բոլոր զէնքերն ու ռազմամթերքը եւ մեկնիլ ուր որ կը փափաքին՝ առնելով իրենց հետ, ինչ որ իրենց սեպհական էր։ Կրօնաւորը կը խնդրէ գրաւոր հաստատագիր մը, որ շուտով կը պատրաստուի եւ կը յանձնուի անոր։ Իսկոյն ամրոցը կը պարպուի եւ սուլտանի բանակը յաղթութեամբ մուտք կը գործէ բերդէն ներս։ Մի քանի օր յետոյ Լեւոնի (Կոստանդինի) պատգամաւորները կու գան յայտնելու իրենց թագաւորին հպատակութիւնն ու խոստումը թէ պատրաստ է տարեկան հազար ձիաւոր եւ հինգ հարիւր աղեղնաւոր տրամադրել սուլտանին եւ կոխուելիք դրամները յաղթող սուլտանի անունով պատուել եւ պատերազմի տուգանքն ալ կրկնակ քանակով վճարել։*

*Մալիք Ալ–Ումարա Հայոց թագաւորին պատգամաւորներն ու անոր հպատակութեան թուղթը սուլտանին կ'ուղարկէ, մինչ այդ ինք կը ձեռնարկէ շրջակայ* 30*ի չափ բերդերը գրաւել։ Ալայեդդին յանձն կ'առնէ Հայ թագաւորին առաջարկը, կը դրուատէ Մալիք ալ–Ումարի եւ Կոմնենոսի քաջութիւնը։ Գրաւած բերդերու կառավարութիւնը կը յանձնէ Ամիր Քամարեդդինի* (*էջ* 142)։

## ԾՈՎԵԶԵՐԵԱՅ ԲԵՐԴԵՐՈՒ ԳՐԱՒՈՒՄԸ ՄՈՒԲԱՐԻԶԵԴԴԻՆ ԷՐՏՈՔՈՒՇԻ ԿՈՂՄԷ (էջ 142–143)

*Այն օրերը, երբ Մալիք ալ–Ումարա Հուսամեդդին Ամիր Չոբան եւ Մուբարիզեդդին Չաւլը դէպի Սուղդաք եւ Հայաստան կ'արշաւէին, Մուբարիզեդդին Էրտոքուշ Աթաբէյ կը դիմէր ծովեզերեայ կողմերը, ուր* 40 *նշանաւոր ամրոցներ կը գրաւէ, ինչպէս Մաւղա, Անդուշիջ, Անամուր, եւ որոնք Փրանկներու ձեռքը կը գտնուէին, այն ժամանակ։ Յաղթող զօրավարը միտք ունէր յարձակիլ Փրանկներու կղզիին վրայ (Կիպրոս), սակայն սուլտանի հրամանի վրայ կը վերադառնայ Կեսարիա, երբ արդէն ծառերն իրենց աշնան ոսկեճամուկ զգեստները հագած էին* (142–143)։

## ԵՐԶՆԿԱՑ ԵՒ ԱՆՈՐ ԻՇԽԱՆԸ (էջ 143–146)

*Մալիք Ալայեդդին Դաւուդշահ իր հօր՝ Մալիք Ֆախրեդդինի մահէն յետոյ, գրաւած էր անոր աթոռն եւ իրեն անցած էր Երզնկան իր շրջակայքով։ Այս գաւառն ամենագեղեցիկ ու սիրուն վայրերէն մին է։ Եփրատ գետն ընդմէջ կը կտրէ եւ մեղմ զեփիւռը կը համբուրէ անոր հովտները, որոնք մանուշակներով ու լեռնավարդերով լի են։*

*Դաւուդշահ թէեւ իմաստութեամբ եւ ամէն գիտութեամբ օժտուած էր, սակայն չէր խորշեր չար գործերէ։ Կ'անտեսէր ծերե–*

---

6 *Լեւոն վաղուց մեռած էր* 1219*ին։ Այս դէպքերը տեղի կ'ունենան* 1225*ին, երբ իրականին Կիլիկիայի գահին վրայ թագաւոր մը գոյութիւն չունէր, Զապէլ փախած էր Սելեւկիա, ամուսինը Փիլիպպոս թունաւորուած մեռած, բովանդակ իշխանութիւնն իր ձեռքին մէջ ունէր Կոստանդին Պայլ, որ յետոյ* 1226*ին իր որդին Հեթում Զապէլին հետ ամուսնացնելով գահ բարձրացուց։*

րու խորհուրդը եւ կը ձեռնարկէր իր երկրին ամիրները մի առ մի հալածել ու սպաննել։ Մի քանիներ կը նախընտրեն փոխանակ հալածանքի ենթարկուելու, կամաւ արտագաղթել։ Ասոնք կը դիմեն սուլտանին եւ կը պարզեն իրենց կացութիւնը։ Դաւուդշահ իմանալով թէ հալածական ամիրները սուլտանին մօտ պատիւներու արժանացած են, ինքզինք արդարացնելու համար մեծամեծ ընծաներով կը դիմէ Կեսարիա, ուր կը գտնուէր Ալայեդդին։ Սիրով ու մեծամեծ պատիւներով կ'ընդունուի սուլտանի կողմէ, որ կ'ուզէր այս կերպով զինք ուղիղ ճամբան բերել (143–146)։

## ԵՐԶՆԿԱՅԻ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 148–151)

Դաւուդշահ սուլտանի մօտէն վերադառնալէն յետոյ կը սկսի խորհիլ թէ քանի իր թշնամի ամիրները սուլտանի արքունիքին մէջ մեծ պատիւներու հասած իրենց ծառայութիւնը կը մատուցանեն արքային, դժուարաւ կրնար իր աթոռին վրայ հաստատուն մնալ։ Այս պատճառաւ կը փորձէ իր կողմը շահիլ Մալիք Աշրաֆը, Մալիք Ռուքնեդդին Ջիհանշահը՝ Մուղիթեդդին Տուղրուլշահի որդին եւ ուրիշներ, սուլտանի դէմ քալելու։ Սակայն դաւադրութիւնը երեւան կու գայ։ Ալայեդդին մեծ բանակով մը անակնկալ կը մտնէ Երզնկայի սահմանները, վերջ կու տայ Դաւուդշահի իշխանութեան եւ զինքը կ'աքսորէ Աքշեհիր, ուր ան գիտութիւններով եւ ուսումնասիրութիւններով կը պարապի մինչեւ իր մահը։

## ԿՈՂՈՆԻԱՅԻ ԳՐԱՒՈՒՄԸ (152–153)

Երզնկայի տիրելէ յետոյ սուլտանը կը հրամայէ Աթաբէյ Երթոքուշի ստուար բանակով մը յարձակիլ Կողոնիայի (Շաբին Կարահիսար) վրայ, որուն մալիքն էր Մուզաֆարեդդին, որ վախնալով սելջուկեան ահեղ ուժէն, պատգամաւոր կ'ուղարկէ Աթաբէյին։ Առանց պատերազմի յանձն կ'առնէր յանձնել իր քաղաքը, պայմանով որ սուլտանն հաճէր իրեն տալ ապահով վայր մը, ուր նա իր ընտանիքով իր կեանքն անցնէր։ Իրեն կը տրուի Քրշեհիր (152–153)։

Այս աշխարհակալութիւններէն յետոյ սուլտանը կը դիմէ Սեբաստիա։ Երզնկայի վրայ կառավարիչ կը կարգէ Ղիասեդդին Քայխոսրով (153)։ Այս միջոցին երկուստեք դեսպանագնացութիւններ կը կատարուին Ալայեդդինի եւ Ջալալեդդինի միջեւ, մինչեւ որ խնդիրը պատերազմի կը յանգի։ Սկիզբը Ջալալեդդին յաղթական էր, սակայն յետոյ Մալիք Աշրաֆի եւ Քամալեդդին Քամեարի առաջնորդութեամբ 1230ին 10 Օգոստոսին սուլտանի բանակը մեծ յաղթանակ մը կը տանի Երզնկայի մօտ եւ նաեւ գերի կը բռնէ Էրզրումի Մալիքը եւ կը գրաւէ ամբողջ նահանգը։ Յաղթութենէն յետոյ բովանդակ Հայաստանի կառավարութիւնն եւ վերին խնամակալութիւնը կը յանձնէ Մալիք Աշրաֆին ի վարձատրութիւն իր օգնութեան (154–174)։

1231ին Չարմաղան Մոնկոլ զօրավարին առաջնորդութեամբ հրոսախումբ մը կ'արշաւէ մինչեւ Սեբաստիայի սահմանները։ Որքան ալ Քամալեդդին Քամեար ստուար զունդով անոնց դէմ կ'ուղարկուի, սակայն թաթարներն արդէն մեծ աւեր ու սպաննութիւններ գործելէն յետոյ մեկնած էին եւ քաշուած Մուղանի անապատը։ Սուլտանն այս մոնկոլական արշաւանքը կը վերագրէր Ափխզիայի վրաց Ռուսուդան դշխոյին սադրանքներուն։ Այդ պատճառաւ կը հրամայէ Քամալեդդինի եւ Մուբարազեդդին Չաշնեգիրի (հրամանատարին) մեծ բանակով մը արշաւել Ափխազիա, Վրաստան եւ զայն պատժել։ Ի տես սելջուկեան մեծ բանակին թագուհին խոհեմութիւն կը համարի խաղաղութեան բանակցութեան մէջ մտնել եւ նոյնիսկ խնամիական կապերով բարեկամութիւն հաստատել սուլտանի հետ (175–178)։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 178–184)

Հայաստան յանձնուած էր Մալիք Աշրաֆի, սակայն ան քաշուած էր Դամասկոսի մէջ, իր հաճոյքներուն անձնատուր՝ կարծես մոռացութեան տուած էր Հայաստանը։ Միւս կողմէ թաթարական հրոսախումբեր յաճախակի արշաւանքներով կը կողոպտէին, գերի կը վարէին բնակչութիւնը, եւ բովանդակ երկիրն այրեացաւեր դարձած էր։ Ալայեդդին կը հրամայէ Քամալեդդին Քամեարի ազատել Հայաստանն այդ հրոսախումբերէն։ Հրամանատարը մեծ բանակով մը կը դիմէ Խլաթ (Ախլաթ), ուսկից էմիրներու առաջնորդութեամբ ամէն ուղղութեամբ կ'ուղարկէ զուն-

ղեր, որոնք կարճ ժամանակի մէջ կը մաքրեն երկիրը թշնամի տարրերէն: Եւ որովհետեւ գրաւուած վայրերն առ հասարակ աւերուած էին, կը ձեռնարկէ վերաշինել: Առ այդ իրեն առատ ատաղձ կը հայթայթէր Խլաթի համար Աղելջեւազ[6] իր առատ կիրով ու փայտով, զոր բերել կու տար ջորիներով եւ ուղտերով: Քամալեդդին իրեն յանձնուած կարեւոր գործերը կատարելէ յետոյ կը մեկնի Կարին եւ ապա Կոնիա սուլտանի մօտ: Անոր հեռանալէն յետոյ Ախլաթ կու գան Զիայեդդին, Փերվանէ Թաղեդդին եւ Մուսթաֆա Սաղեդդին բազմաթիւ պահակներով ու զինուորներով տեղւոյն վրայ կարգ ու կանոն հաստատուն պահելու համար: Գիւղացիներ ու մեծ կալուածատէրեր կրկին իրենց երկիրը կը վերադարձնեն: Սերմանացու եւ արջառ կը տրամադրեն անոնց, հարկերը կը վերցնեն եւն: Այս կարգադրութիւններու համբաւը կը հասնի մինչեւ Վրաստան, շատ մը փախստականներ կրկին կը վերադառնան իրենց ծննդավայրերն եւ կը սկսին վերաշինել իրենց հայրենի բոյնը: Վերին հրամանատար կը կարգուի Ախլաթի մէջ Սինանեդդին Քըմազ: Սա լսելով թէ Դատուանի (Ṭaṭvan) մէջ կը գտնուի Կըրխան (Qyrḫān) խուարիզմ բանակով եւ երկիրն անոր վնասաբեր ասպատակներէն ապահով չէր, լոկ ծառայ մը եւ ձիապան մը հետն առնելով Դատուան կ'երթայ եւ տեսակցութիւն մը կ'ունենայ Կըրխանի հետ եւ կը յաջողի զայն համոզել, ճանչնալ տալ սուլտանի վերին իշխանութիւնը, փոխարէնը խոստանալով իրեն եւ իր էմիրներուն այն գաւառները, որոնք կ'երկարաձգուէին մինչեւ Կարնոյ սահմանները: Այս իմաստով դաշնադրութիւն մը կը կնքուի մէկ կողմանէ խուարիզմ իշխաններու Կըրխանի, Բարակաթի, Ցըլան Նողուխանի, Սարուխանի եւ Քիւչլիւ Սենգգումի եւ միւս կողմէ սուլտանի զօրավարներուն միջեւ:

Յաջորդ օրն իսկ Կըրխան իր հետեւորդներով ճամբայ կ'ելլէ դէպի Էրզրում, իրեն տրամադրուած երկիրները գրաւելու համար: Կը հասնին Թողտափ[7], դալարագեղ մարգագետին մը կը տեսնեն իրենց առջեւ ուր կ'ընկողմանին խոր քունի մէջ եւ ձիերն ալ կ'արձակեն արածելու համար: Թաթարական հրոսախումբ մը գիշերային յարձակում մը կը գործէ Կըրխանի գունդին վրայ: Շատերը կը սպաննուին, ճողոպրածներն ալ լեռները կ'ապաստանին: Լուրը կը հասնի Ախլաթ: Սահիբ գունդով մը կը փութայ Էրզրում: Ցրուած ու փախստական գունդերէն վերապրածները կը հաւաքէ եւ կը մխիթարէ եւ գլխաւորները Կըրխան, Բարակաթ, Ցըլան, Սենգգում կ'առաջնորդէ սուլտանին Կեսարիայի մէջ: Թագաւորն իւրաքանչիւրին մէկ մէկ քաղաք կու տայ իբր աւատ, Կըրխանի՝ Երզնկան, Բարակաթի Ամասիան եւն (178–,84):

1232 թուին Մալիք Քեամիլ Եգիպտոսի սուլտանը կը ձեռնարկէ արշաւանքի մը դէպի սելջուկեան երկիրները· իրեն կ'օժանդակէր Խարբերդի Մալիքը, սակայն յաջողութիւն չի գտներ: Կրկին կը վերադառնայ Եգիպտոս: Խարբերդի մալիքը խորհելով թէ սելջուկեան բանակը այժմ իր թիրախը պիտի ունենար իր Խարբերդի իշխանութիւնը, կը խնդրէ մալիք Քեամիլէն օգնական ուժեր: Որքան ալ իր ցանկութիւնը կը գոհացուի, սակայն տեսնելով թէ սուլտանին բանակին հետ պիտի չկարենար չափուիլ, խաղաղութեան բանակցութեան կը մտնէ Քամալեդդին Քամեարի հետ: Ներում կը ստանայ սուլտանէն (184–190):

Քամալեդդին Քամեար այնուհետեւ իր ուժերը կ'առաջնորդէ դէպի Խառան: Երկու ամսուան պաշարումէ վերջ կը գրաւէ զայն: Եւ երբ կը վերադառնայ Մալաթիա, կը լսէ թէ ինչպէս մալիք Քեամիլի զօրքերը կրկին գրաւած էին Խառանն եւ սելջուկ պահակա-

[7] Այս վայրին անունը բնագրին մէջ հաւանաբար աղաւաղուած է, կը ներկայանայ մի քանի տարբերակներով՝ Hâtal – ğur, 'Adilğevaz 'Adeğavaz, Hatulğuz եւն: Դուզա նախընտրած է Hotorğur սրբագրել, որուն ի նպաստ արտայայտուած է մեծ. Հ. Ն. Ակինեան, (տես Անդ էջ 179 ծն. c): Սակայն ակընյայտնի սխալ սրբագրութիւն մըն է: Քամալեդդին կը գտնուէր Ախլաթ, եւ ուր սկսած էր շինարարութեան: Ախլաթի եւ Խոտորջուրի հեռաւորութիւնը նկատի առնելով ոչ մի կերպով կարելի է հաշտեցնել նման ենթադրութիւն մը: Muḫtasarի մէկ ձեռագիրը հարազատօրէն պահած է ուղիղ ձեւը عادلجواز ('Adelğewaz), Ախլաթէ ոչ շատ հեռու, Սիփան լերան ստորոտը, հին հայոց Արծկէ քաղաքը, ուր բաւարար ատաղձ, կիրի եւ փայտի կարող էր գտնել: Պէտք չունէր չաբաթներով հեռու Խոտորջուրէն զայն բերել տալ:

[8] Ṭoğṭab հաւանաբար աղաւաղուած է, ինչպէս ձեռագրական տարբերակներ կը վկայեն: Խլաթէն դէպի Էրզրում ուղին կ'առաջնորդէ Բասենի դաշտը, որուն սկզբնաւորութեան կը գտնուի Թորդան, կը թուի թէ ուղղելու է Ṭortan որուն մօտ է Oğuzname f. 265 10 vo طوغطاب ձեւը, զոր ուղղելու է طورطان ի, տես Անդ էջ 182 ծն. a:

զօրքն ու անոնց առաջնորդը գերեվարած Եգիպտոս տարած էին։ Ալայեդդին սուլտան կը փափագէր փոխանակ կրկին Խառանի վրայ քալելու, ձեռնարկել արշաւանքի մը Ամիդի վրայ։ Սակայն Ամիդ անառիկ քաղաք մըն էր։ Քամալեդդինի կարծիքին համեմատ միայն հնարաւոր էր երեք տարուան ընթացքին զայն գրաւել։ Առաջին տարին բոլոր շրջակայ դաշտերն ու արտերն այրել ու աւերել։ Երկրորդ տարին խափանել պարէնի ու օգնական ուժերու մուտքը։ Երրորդ տարին անշուշտ սովէն նեղուած անձնատուր պիտի ըլլային։

Այս ծրագիրն Ալայեդդինի հաւանութեան չ'արժանանար։ Փերվանէ Թաջեդդին, Շարաֆեդդին Երզնջանիի որդին, որ նախանձորդ'էր Քամալեդդինի փառքին, կ'առաջարկէ սուլտանին իրեն յանձնել այդ գործը, զոր կը խոստանար վեց ամսէն գլուխ հանել։ Սուլտանէն կը յանձնուի Ամիդի արշաւանքն իրեն։ Սակայն ոչ մէկ կերպով կարող կ'ըլլայ յաջողութիւն մը ձեռք բերել։ Եւ որովհետեւ Թագաւորն անպատճառ կ'ուզէր գրաւել Ամիդ բերդը, հրամանատարութեամբ Սահիբ Շամսեդդին Իսպահանիի նոր բանակ մը կ'ուղարկէ որ նոյնպէս չի յաջողիր իր ձեռնարկին մէջ։ Յաջորդ տարին մինչ Թագաւորն անձամբ կ'ուզէր գործը ձեռք առնել, կը վախճանի 31 Մայիս 1237ին (190–199)։

(Շարունակելի.) Հ. Փ. ՏԷՐ–ՊՕՂՈՍԵԱՆ

---

# ԽԱՐԲԵՐԴԻ ՎԱՆՔԵՐԸ

Խարբերդի նահանգին սահմանները են՝ «Հիւսիսէն Էրզրումի եւ Տէրսիմի կուսակալութիւնները, արեւմուտքէն Տիգրանակերտի կուսակալութիւնը եւ անոր կցուած Բալուի գաւառակը (գազա), հարաւէն Հալէպի կուսակալութեան կցուած Ուրֆայի գաւառը (սանճագ), արեւմուտքէն Սվազի եւ Հալէպի կցուած Մարաշի սանճագները եւ Ալպիւթոնի ու Այնթապի գազաները» (Վահէ Հայկ, Խարբերդ եւ անոր ոսկեղէն դաշտը, էջ 71)։

## Ա.

## ԱԿՆԱՅ ՎԱՆՔԵՐԸ

### 1. ԱԹՄԱՅ ՎԱՆՔԸ

Թէեւ այս վանքը Ակնայ շրջանին մէջ կը դրուի (Էփրիկեան, Բնաշխ. Բառն. Ա. էջ 28), բայց կը խորհիմ թէ Տիվրիկի Աւթմնայ վանքին հետ նոյնը պիտի ըլլայ — արդէն Տիվրիկ եւ Ակն իրարմէ շատ հեռու չեն եւ եկեղեցիներու կամ խորաններու մէկուն անունն ալ (Ս. Աստուածածին) կարծես այդ կը հաստատէ։

Ծանօթ է սա Յիշատակագրութենէն

«Գրեցաւ սա (Յունաց շարակնոց) ձեռամբ եղկելի սուտանուն կրօնաւորի Պապա Իաննի ի վանքս, որ կոչի Նորվանք ընդ հովանեաւ ամենասրբուհի Աստուածածնի եւ մեծ եւ ահաւոր սուրբ Հրեշտակապետացն Միխաիէլի, ի վանքն որ կոչի Աթմա, ի սուրբ Ժէորժու եւ սուրբ Աստուածածնի (Գրեցաւ ի Թուիս Հայոց ՌԼԱ տարին (1582) կուս էր վերադիրն, իմ հայրապետն Ղնատիոս մետրապոլիտն[1]» (Բազմավէպ 1904 էջ 328)։

### 2. ԱՅ–ԵՈՐԿԻ ԿԱՄ Ս. ԳԷՈՐԳԻ ԿԱՄ ՎԱՆՔ ԳԻՒՂԻ ՎԱՆՔԸ

Ակնի Վանք գիւղը ունեցած է հայ–հոռոմ բնակչութիւն եւ անոր եկեղեցին եղած է Այ–Եորկի — Ս. Գէորգ։ Հաւանական կը թուի թէ այս եկեղեցին հին ատեն վանք մը եղած ըլլայ եւ գիւղը անկէ առած ըլլայ իր անունը[2] (Հմմտ. Պարսումեան, Ակն եւ Ակնցիք, էջ 123, Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 58, Թորոս Աղբար Ա. էջ 124 եւ Քէչեան, Ակն եւ Ակնցիք, էջ 50)։

### 3. Ս. ԳԷՈՐԳԻ ԱՆԱՊԱՏԸ ԵՒ Ս. ԳԷՈՐԳԻ ԿԱՄ ԱՐՄՏՈՒ ՎԱՆՔԸ

Կամարակապ գիւղի Ս. Գէորգ փոքր եկեղեցին կամ մատուռը կոչուած է Անապատ[3]։ Արդեօք վանականներու կամ ճգնա–

---

[1] Այս Յիշատակագրութեան նժարը նաեւ Ակնայ կողմը կը խոնարհեցնէ, նկատելով որ այդ տեղերը հայ–հոռոմներ կային եւ անունններն ալ յունական դրուած են։

[2] Ունէր Ս. Սարգիսի նուիրուած մատուռ մը։ Սիրուած ուխտատեղի էր։

[3] Արսլանեան Ս. Գէորգ կամ Արմտու վանքի մասին, որ շրջապատուած է լեռնաշղթայով, ունի սա կարեւոր տողերը. «Ս. Գէորգի չարաթացեալը Սարմուսախի լեռնասարին, բյուրին եւ բլրադաշտակին կուշտին թէ քղանցքին բունած եւ Խարասրթին բա–

ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ԹԻՒ 10—12 ՀՈԿՏԵՄԲԵՐ—ԴԵԿՏԵՄԲԵՐ ՀԴ. ՏԱՐԻ 1960

## ՀԱՄԱՌՕՏԸ ԻԲՆ ԲԻԲԻԻ ՀԱՄԵՄԱՏ

### ՂԻԱՍԵԴԴԻՆ ՔԱՅԽՈՍՐՈՎ (էջ 199–210)

Ալայեդդինի մահէն յետոյ սուլտան կ'ընտրուի 1 Յունիս 1237 թուին Ղիասեդդին Քայխոսրով, որդին Քայքոբադի: Իր իշխանութեան սկիզբներն իսկ արքունիքի մէջ ազդեցիկ կը դառնայ Սադեդդին Քէօբէք, որ մի առ մի կը մաքրագործէ հրապարակէն իր մրցակիցները եւ ժամանակ մը միահեծան կ'իշխէ արքունիքին մէջ: Սակայն վերջ ի վերջոյ իր չահատակութիւններն իրենց վախճանը կը գտնեն: Սուլտանը վերահասու կ'ըլլայ թէ իր տէրութեան սիւները Քէօբէքի փառասիրութեան զոհ եղած էին. ուստի հարկ կը տեսնէ զինքը չէզոքացնել: Հրաման կ'ընէ իր Թիկնապահին միջոցաւ Սեբաստիայի կառավարիչին Զանդար Կարաջայի Քէօբէքը մէջտեղէն բառնալ: Կարաջա շուտով կը յաջողի Քէօբէքի վստահութիւնը շահիլ եւ յետոյ ալ զինքը ծուղակի մէջ ձգել: Ան չարաչար մահ մը կ'ունենայ եւ բովանդակ աշխարհն ալ այդ հրէշէն ազատած կ'ըլլայ (199–210): —

### ՂԻԱՍԵԴԴԻՆԻ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆԸ (էջ 210–11)

Քամալեդդին Քամեարի արշաւանքի ժամանակ, զոր ձեռնարկած էր վրաց Ռուսուդան Թագուհիի դէմ, համաձայնութեան մը եկած էին երկուստեք, խնամութեան կապով վերջ տալ պատերազմի: Ղիասեդդին իր գահին վրայ հաստատուելէն յետոյ, իր Շիհաբեդդին զօրավարին կը յանձնէ այդ գործը փութով գլուխ հանել: Շիհաբեդդին Մուստաֆա Կրմանի կը փութայ խկոյն ներկայանալ Ռուսուդանի, իր տիրոջ կամքը անոր յայտնելու: Ռուսուդան իր դստեր հարսանիքի բոլոր պատրաստութիւնները տեսնելէ վերջ, Շիհաբեդդին կը վերադառնայ հարսին հետ մեծ շուքով Երզնկա: Աւետաբերներ կ'ուղարկուին սուլտանին, որ կը փութայ Կեսարիա, եւ ուր կ'ընդունի իր խօսեցեալը մեծ ուրախութեամբ: Այդտեղ միանգամայն տեղի կ'ունենան հարսանիքի ճոխ խնջոյքները:

### ԱՄԻԴԻ ԳՐԱՒՈՒՄԸ (էջ 213–216)

Սուլտանի այն ուժերը, որոնք Ասորիք գացած էին Խուարիզմներու դէմ, իրենց վերադարձին կ'ուզէին փորձել Ամիդ քաղաքը գրաւել: Սակայն օգնական ուժերու պէտք ունէին: Միւս կողմէ կը տեսնէին թէ դժուարին գործ էր այդ անառիկ քաղաքը բռնի ուժով գրաւել: Կաշառքի կը դիմեն, իրենց նպատակին հասնելու համար: Եւ իսկապէս ալ կը յաջողին կաշառել քաղաքապահ բանակին հրամանատարը Ֆախրեդդին չորսհարիւր հազար դենարով եւ տիրել քաղաքին:

### ՆՓՐԿԵՐՏԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ (էջ 220–222)

Նփրկերտի (Մայաֆարկին) վրայ կ'իշխէր էյուբեան տունէն Մալիք Ղազի (1220–1244): Ամիդի գրաւումը, զոր Ալայեդդին այնքան տարիներ փորձած էր ձեռք բերել չէր յաջողած, Ղիասեդդինի մէջ անափառութեան եւ աշխարհակալութեան ոգին կ'արթընցնէ: Ան կը կարծէր թէ դիւրաւ կարող պիտի ըլլար Մալիք Ղազին ալ իրեն հպատակեցնել: Այս պատճառաւ կը հրամայէ իր հրամանատարին ամէն պատրաստութիւն տեսնել արշաւելու Նփրկերտի վրայ: Իր սեպհական ուժէն զատ իրեն օգնութեան կու գար Ասորիքէն Մալիք Մու՛ազզամ իր բանակով: Ղազին ալ բնականաբար անգործ չէր մնացած, ան ալ իրեն օգնութեան հրաւիրած էր սելջուկներու ոխերիմ թշնամին՝ Խուարիզմեան վարձկան ուժերը: Երկակողմանի յաճախակի պայքարներ տեղի կ'ունենան, սակայն ոչ մին կը յաջողի վճռական արդիւնքի մը յանգիլ: Իսկ երբ անձրեւներ չարունակ

կը տեղան, սելճուկ բանակը կ'ենթարկուի անգործութեան։ Այդ միջոցին սուլտանի արքունիքէն հրաման կու գայ դադրեցնել պատերազմը եւ վերադառնալ կենդրոն։

Մալիք Մու'ազզամ լսելով թէ Ղազի ալ տրամադիր չէ պատերազմը շարունակել, կը փորձէ բարեկամութեան դաշինք մը կնքել սուլտանի անունով անոր հետ։ Եւ իրապէս ալ այդ առաջարկը կ'ընդունուի Ղազիի կողմէ, եւ խաղաղութեամբ երկու բանակներ իրարմէ կը բաժնուին։ Սելճուկ բանակը կը վերադառնայ Մալաթիա, իսկ Մու'ազզամ ալ Ասորիք։

## ԹԱԹԱՐԱԿԱՆ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ (էջ 222–237)

Որքան սուլտանը կը ձգտէր իր աշխարհակալութիւններն ընդարձակել, այնքան հակառակը տեղի կ'ունենար։ Մոնղոլական արշաւանքներ Բաչու զօրավարին հրամանատարութեան տակ, տակաւ առ տակաւ կը տկարացնեն սելճուկեան պետութիւնը։ Առաջին հարուածը կ'ընդունէր Ղիասեդդին Կարնոյ քով։ Բաչու երեսուն հազար ձիաւորներու ընտիր բանակով կու գայ անակնկալ Կարին եւ զայն կը պաշարէ։ Քաղաքը կը պաշտպանէին Սինանեդդին Եաքութ իբր զինուորական կառավարիչ եւ Իստանկոս, Փրանկ ուժերու հրամանատարը։ Գիշեր ցերեկ անդադար խոյերու տեղատարափ մը կը հարուածէր քաղաքին պարիսպները։ Աշտարակներէն միոյն պահապան զօրավարը, Մուշրիֆ Դուվայնի, վատաբար կը համաձայնի գաղտնի պատգամագնացութեամբ Բաչուի հետ, յանձնել իր աշտարակը, պայմանով որ իր եւ իր հետեւորդներու կեանքին խնայէ։ Բաչու նամակով մը կը հաստատէ անոր փափաքը։ Նոյն գիշերը երկու հարիւր քաջ զինուորներ կը բարձրանան Մուշրիֆի աշտարակը։ Առաւօտեան արդէն պարիսպի մեծ դռներու նիգերը խորտակուած էին։ Թաթարական բանակը անարգել կը խուժէ ներս եւ կը գրաւէ բերդաքաղաքը։ Կապուտ, կողոպուտ, գերեվարութիւն, առեւանգում ալ չափ ու սահման չունէր։ Սինանեդդին իր որդւոյն հետ չարաչար կը սպաննուի։ Անհամար գանձեր ու հարստութիւն առած կը մեկնին թաթարները Մուղան։

Սուլտանն երբ կը լսէ Կարնոյ անկումը, չափազանց կ'ազդուի։ Կը հաւաքէ իր խորհրդականները խորհելու այն միջոցներուն վրայ, որով կարելի պիտի ըլլար թշնամին հալածել իր երկրէն։ Խորհրդածութիւնները հետեւեալ որոշումին կը յանգին. Մալիք Ղազիի դեսպան ուղարկել, նախ՝ Մայաֆարկինի արքայութեան համար ներում խնդրել, երկրորդ՝ Խլաթ, որ անոր եղբօր Աշրաֆին տրուած էր, իրեն վերադարձնել եւ նոյնպէս առաջարկել իրեն 10·000 դենար եւ 100·000 դրամ, որպէս զի համապատասխան ուժով իրենց օգնութեան գայ։

Նոյնքան դրամական ընծաներ կ'ուղարկուին Ասորիք եւ Սիսի տիրոջ նոյն խնդրանքով եւ նոյն պայմաններով։

Գարնան սկիզբներն ամէն կողմէ կը հաւաքուին Սեբաստիա, աւելի քան 70 հազար ձիաւոր։ Տակաւին ժամանակ մըն ալ կը սպասեն Թագաւորին (Tekvur), որ խոստացած էր մէկ երկու օրէն Հայ եւ Փրանկ 3000 այրուձիով օգնութեան գալ։ Երբ նաեւ Ասորիքի օգնական ուժերն ալ կը հասնին, այն ժամանակ խորհուրդ կ'ընեն թէ ի՛նչ դիրք պէտք է բռնել։ Փորձառու երէց զօրավարներու կարծիքը կ'ըլլայ մնալ Սեբաստիայի մէջ, մինչդեռ երիտասարդ տաքգլուխ զօրավարներ կը ստիպեն սուլտանը բանակն առաջ շարժել, եւ նոյն իսկ թշնամին իր երկրին մէջ զարնել։ Ղիասեդդին առանց խորհուրդին համեմատ կը հրամայէ, որ բանակը պատրաստուի արշաւելու թշնամիին դէմ։ 80 հազարէ աւելի սուսերաթիւ զօրքն երբ Քէօսէ դաղի ստորոտը կը հասնի, որ կը գտնուի Սեբաստիայի եւ Երզնկայի միջեւ, կը լսեն թէ Բաչու քառասուն հազար ձիաւորներով արդէն հասած էր Երզնկայի Աքշէհիր դաշտը։ Իսկոյն հրաման կը տրուի Քէօսէ դաղի ստորոտը ճակատ կազմել։ 1243 Յունիս 26ին ուրբաթ օրը կատաղի ճակատամարտ մը տեղի կ'ունենայ։ Սկիզբները յաջողութիւնը սուլտանի բանակին կողմն էր, եւ նոյն իսկ յաղթութեան աւետաբերներ կ'աւետէին սուլտանին իր բանակին յաղթութիւնը։ Սակայն Բաչու վերջին վայրկեանին հակայարձակումով կը խորտակէ սելճուկ բանակի թափը եւ արիւնահեղ կռուով մը վերջ կու տայ պատերազմին։ Բովանդակ սելճուկ բանակը քայքայուած փախուստի կը դիմէ։ Ղիասեդդին եւ իր զօրավարներէն շատեր, որոնք ողջ մնացած էին, կահ ու կազմած, ռազմամթերք ու հարստութիւն պատերազմի դաշ-

տին վրայ ձգած կը փախչին Եւդոկիա: Թաթարներն այս մեծ յաղթութենէն յետոյ կը շարունակեն հետապնդել հալածական Թըշնամին եւ կը հասնին Սեբաստիա, որ առանց ընդդիմութիւն ցուցնելու իր դուռները կը բանայ Մոնղոլներու առջեւ: Զորս օր քաղաքը կողոպուտի կ'ենթակուի եւ ապա ազատ կը ձգուի: Կարգն եկած էր Կեսարիայի, ուր կը գտնուէր նաեւ սուլտանի մայրը, որ տեսնելով վտանգը կ'ապաստանի Սիսի տիրոջ մօտ: Քաղաքին հրամանատարները, Սամսամեդդին Քըմազ եւ Ֆախրեդդին Այազ, կ'ամրացնեն բերդերն ու աշտարակները թշնամի բանակին դիմադրելու նպատակով, սակայն վերջ ի վերջոյ քաղաքը կը գրաւուի Բաչուի կողմէ, եւ կողոպուտի եւ աւարի մատնուելէ վերջ, հրոյ ճարակ կը դառնայ: Սելջուկ մեծամեծներ քաղաքէն փախստական կը դիմեն Հալէպ: Ճամբան Սիսի Հայերը վատ վերաբերում կ'ունենան փախստականներու հետ, եւ նոյն իսկ սուլտանի մայրը, զոր իրենց մօտ կը պահէին Թաթարներու ձեռքը կը մատնեն: Ղիասեդդին չարաչար պարտուած, խոնարհեցուցիչ պայմաններով Թաթարներու հետ խաղաղութիւնը կնքելէ յետոյ կը ձեռնարկէ իր վրէժը լուծել Սիսէն (էջ 222–237):

## ԱՐՇԱՒԱՆՔ ԴԷՊԻ ՍԻՍ (էջ 237–239)

Երբ Ղիասեդդին պատերազմ կը հռչակէ Սիսի՝ (այսինքն Հեթումի) դէմ, ամէն կողմէ բազմութիւն կը հաւաքուի Կոնիա: Սահիբ Շամսեդդինի հրամանատարութեան տակ սելջուկ բանակը Հերակլիայի վրայէն կ'անցնի Կիլիկիա եւ Տարսոնի առջեւ կանգ կ'առնէ: Բոլոր շրջակայ վայրերը կ'աւերեն, կ'այրեն: Տարսոն երկար ժամանակ պաշարումի կ'ենթարկուի: Շարունակ ռմբակոծումները թէեւ պարիսպներու վրայ ծերպեր առաջ կը բերեն, սակայն սելջուկ բանակը չի յաջողիր գրաւել քաղաքը: Միւս կողմէ ծայր կու տան տեղատարափ անձրեւներ, որոնք ամէն կողմ ճահիճի կը վերածեն: Իսլամ ուժերը դամուած մնացած էին, անկարող ազատ շարժումներ ընելու: Այս նեղ կացութեան մէջ արքունիքէն հրաման կու գայ, անյապաղ վերադառնալ Կոնիա, որովհետեւ սուլտանը յանկարծամահ եղած էր: Սահիբ Շամսեդդին կը փորձէ խորամանկութեամբ նպաստաւոր պայմաններով Հայոց Թագաւորին հետ խաղաղութիւն կնքել: Այդ նպատակով կ'ուղարկէ անոր պատգամաւորներ ըսել տալով թէ «ինքն ժամանակին արդէն Ալայեդդինի օրով միշտ աշխատած է սանձել անոր արշաւելու տենչը Կիլիկիայի վրայ: Այժմ ալ նոյն տրամադրութիւնը կը սնուցանէ Թագաւորին հանդէպ, այնպէս որ (իբր թէ) ակամայ կը պատերազմի, եթէ ուզէր, կարող էր մէկ օրէն քաղաքը գրաւել: Քէօսէ դաղի պարտութենէն վերջ Հայերու վերաբերմունքը այնքան վատ տպաւորութիւն գործած է սուլտանին վրայ, որ չափազանց բարկացած այս գործին ձեռնարկած է, եւ ինքն ստիպուած պատերազմը կը շարունակէ: Եթէ Թագաւորը պատրաստակամութիւն ցոյց տայ, այդ վատ վերաբերումին համար ներում խնդրել եւ կրկին սովորական խոստացուած տուգանքները հատուցանել, այն ժամանակ դիւրաւ հաշտութիւնը կը գոյանայ մեր մէջ»:

Թագաւորը (Tekvur) սիրայօժար յանձն կ'առնէ Շամսեդդինի առաջարկը, եւ այդ հիմամբ կը կնքուի խաղաղութեան դաշինքը 1246 թուին:

Սելջուկ բանակը կը վերադառնայ Կոնիա: Սահիբ Շամսեդդին չորս զօրավարներու խորհուրդով Ղիասեդդինի 3 որդիներէն Իզեդդին Քայքաւուս կ'ընտրէ սուլտան, սակայն միւսները հետագային այս ընտրութենէն գոհ չեն մնար, այնպէս որ Թաթար խանին միջամտութեամբ յաճախ մին կամ միւսը սուլտանութեան կը կոչուէր, եւ այս կերպով սելջուկ միապետութիւնը ստէպ եռապետութեան կը փոխուէր: Մինչեւ 1246 թուականն առհասարակ սելջուկեան տէրութիւնը սահմանակից երկիրներու հետ սերտ յարաբերութիւն ունէր, այդ թուականէն յետոյ ներքին երկպառակութիւններ գործօն դեր կը կատարէին: Իբն Բիբի այդ դէպքերը կը նկարագրէ իր 230–326 էջերուն մէջ եւ մեզի համար հետաքրքրական անցուդարձեր գրեթէ գոյութիւն չունին: Պատահական կերպով կը յիշէ (էջ 291) դէպք մը, որ հայ Թագաւորի մը (Խլաթի, հաւանաբար Շահ-Արմէններու) կը հայի: Սելջուկեան եռապետներէն Իզզեդդին գահէ աքսորուած, աղքատութեան մէջ կը տուայտէր: Նամակով մը տնտեսական նախարարէն երբ օգնութիւն կը մուրայ, վերջինս նախարարապետին ներկայացնելով խնդիրը, Իզզեդդինի վիճակը կը

համեմատէ Տուղրուլ Ասլանշահի վիճակին հետ, զի երբ ան ալ էմիրներէն լքուած երկրին մէջ թափառայած կը շրջէր, Հայոց (Խլաթի) թագաւորէն օգնութիւն կը հայցէ, անոր սրտին գթութեան ապաւինելով, սակայն Հայ թագաւորը կը զլանայ, եւ որուն համար իր անունն ալ կ'անցնի պատմութեան մէջ իբր ագահ:

⁂

Երբ Իբն Բիբիի երկին Հայաստանի հայոց մասին ամփոփոյթը կը վերջացնենք, կ'արժէ առանձնապէս մատնանիշ ընել երկու կարեւոր կէտեր որոնք աւագ նշանակութիւն ունին Հայ կիլիկեան պատմութեան համար:

## Ա. ԱԼԱՅԱ = ԿԱԼՈՆՈՐՈՍ

Հ. Ալիշան Սիսուանի[1] մէջ այս բերդին մասին հետեւեալ կերպով կ'արտայայտուի. «Հետաքննելի է մեզ գիտել եթէ ի տէրութեան մերոյս Լեւոնի ի վերայ ծովեզերեայցս մինչեւ յԱտալիա, յոյր ձեռս էր ծովաբերդս այս. զի ոչ ի ցուցակի անդ բերդորէից եւ բերդատեարց հանդիսացելոյ ի թագակապութեան նորին, եւ ոչ այլուր յիշի այսու Կոռակեսիոն անուամբ, եւ ոչ Ալայայ, որպէս կոչի զարդիս. եւ այլովքն եւս, որովք կոչէին զայն իտալացի վաճառականք եւ նաւաղք միջին դարուց, երբեմն Կանդելոր, Candelor, որ եւ Calandos եւ Scalandros, Calanders, երբեմն Castel Ubaldo. Բերդ Ուբալդոյ, կամ սոսկ Baldo Պալտոյ: Բայց ես հաւանեալ եմ թէ սա է կոչեցեալն ի ժամանակցաց նոցին ի մերոցս Հայոց Կալօնորոս: (Անդ էջ 312–313): Ինչ որ Ալիշան երկար պատճառաբանութիւններով կ'աշխատէր ապացուցանել թէ Ալայա, նախապէս Կալոնորոս կը կոչուէր, Իբն Բիբի մեզի կը ներկայացնէ իբր իրողութիւն (հմմտ. Հ. Ա. 1960 թ. 4–6, էջ 168–169), որով այլեւս տարակոյս չի մնար: Ալայեդդին Կիր Վարդի ձեռքէն Կալոնորոս բերդը գրաւելէն յետոյ անոր մարմարեայ բարձունքը կը հրամայէ պարիսպներով ամրացնել եւ իր բարձր անուան համապատասխան բերդն ալ կոչել Ալայա (հմմտ. Իբն Բիբի, Սելջուկեան Պատմութիւն էջ 109):

[1] Հ. Ղ. Ալիշան, Սիսուան, Համագրութիւն Հայկական Կիլիկիոյ, Վենետիկ — Ս. Ղազար 1885, էջ 312–315:

## Բ. ՀԵԹՈՒՄԻ ԵՐԿԼԵԶՈՒԵԱՆ ԴՐԱՄՆԵՐՈՒ ՀԱՐՑԸ

Եւրոպական դրամագէտներ, ինչպէս Հ. Կ. Սիպիլեան կը յիշէ իր Դասաւորութիւն Ռուբէնեան Դրամոց Յաւելուածին մէջ, Հեթումի երկլեզուեան դրամները կը համարին արդիւնք Հեթումի հպատակութեան Ռումի սելջուկեան իշխանութեան հանդէպ: Մինչդեռ ինքը, Սիպիլեան այն համոզումն ունի թէ «Աս երկլեզուեան ստակները բարեկամական կապակցութեան ու յարաբերութեան եւ միանգամայն վաճառականութեան դիւրութեան համար՝ երկու սահմանակից տէրութեանց մէջն ալ անցնելու որոշուած ստակներ էին, ինչպէս որ Ռուսաց եւ Թաթարաց լեզուաւ կոխուած երկլեզուեան ստակներէն, ու Սիկիլիայի մէջ Նորմաններուն տպել տուած լատիներէն ու արաբերէն երկլեզուեան ստակներէն ալ յայտնի է, որոնք նոյնպէս վաճառականութեան դիւրութեան համար կոխուած էին: Մեր աս պատճառները չէ թէ Կիլիկեցւոց թագաւորութեան զօրութեան ջատագովութիւն մ'ընելու մտօք է, այլ միայն ճշմարիտ պարագայ մը երեւան հանելու համար: Ռուբինեանք թէպէտ շատ անգամ մեծամեծ քաջութիւններ գործած ըլլան, սակայն գիտենք թէ իրենց տէրութիւնը փոքր էր եւ ամէն կողմանէ անհաշտ թշնամիներէ պաշարուած: Բայց չենք ուզեր որ պատմական եւ հնագիտական պարագաներն այլազգ ցուցուցած ատեն՝ պատճառներու եւ հաւանականութեան աստիճաններուն միտ չդնելով՝ Ռուբինեան երկլեզուեան դրամ մը տեսնուելուն պէս, առանց ուրիշ քննութեան, իբրեւ հպատակութեան նշանակ ու հարկատուի ստակ համարուի» (Յաւելուած՝ Ռուբինեան Թագաւորներու մինչեւ հիմայ չհրատարակուած դրամները Վիեննա 1892 էջ 21–22):

Սիպիլեանի այս կարծիքը գրեթէ կը կրկնեն յաջորդ դրամագէտները: Այսպէս օր. Կ. Յ. Բասմաջեան (Հայկական Ընդհ. դրամագիտութիւն էջ 24–28): «Սելճուկեան սուլտաններու անունները կրող դրամներու շարքին մէջ մեզ համար ամենէն կարեւորն ու հետաքրքրականները, սակայն, Հայակիլիկիոյ մայրաքաղաքին՝ Սսոյ մէջ տպուած երկլեզուեան դրամներն են, արաբերէն հայերէն (էջ 24): . . . Սակայն՝ ասոնք սելճուկեան չեն, այլ յաւէտ հայկական, որոնք Հեթումի կողմէ տպուած են, ի յիշատակ

բարեկամութեան եւ դաշնակցութեան Իկոնիոնի յիշեալ երկու սուլտաններուն հետ» (էջ 125–126)։

Հեթում Ա. (1226–1269/70) թագաւորին միայն յատուկ են երկլեզուեան դրամներ, ասոնք երկու տեսակ են։ Առաջինները կը ներկայացնեն մէկ կողմը «Հեթում Թագաւոր» ընթերցուածը, միւս կողմը սելջուկեան սուլտաններէն Ալայեդդին Քայքոբադի, որդի Քայխոսրովի անունը։ Այս դրամները անթուական են եւ փողերանոցի վայրն ալ անծանօթ։ Իսկ միւս դրամները կը կրեն մէկ կողմը նոյնպէս Հեթում Թագաւոր Հայոց, երկրորդ կողմը կը կարդանք Ղիասեդդին Քայխոսրով, որդի Քայքոբադի։ Այս վերջիններս ունին թէ թուական եւ թէ կոխուած վայրը։ Ոմանք ունին 637 Հիջրէթի = 1239, միւսները 641 = 1243 թուականը, կոխուած կամ տպուած ի Սիս։

Ի՞նչ առթիւ հրապարակ հանուած են այս դրամները։ Հայ պատմագիրներու մօտ դժբախտաբար չենք հանդիպիր հայկական դրամներու մասին տեղեկութիւններու։ Բարեբախտութիւն մըն է, որ ճիշդ այն երկլեզուեան դրամներու մասին, որոնց ոչ թուականն եւ ոչ ալ կոխուած վայրը ծանօթ է, Իբն Բիբիի շնորհիւ թանկարժէք վկայութիւն մը կ'ունենանք։

Սելջուկեան սուլտանները շատ յաճախ գործ ունեցած են Ռուբինեան թագաւորներու հետ, մերթ բարեկամական եւ յաճախ թշնամական վերաբերումներով։ Մէկ երկու դարերու այդ դրացնութիւնը՝ բարեկամական թէ թշնամական, բազմաթիւ առիթներ պէտք էր ընծայած ըլլար երկլեզուեան դրամներու հրապարակ հանուելուն։ Սակայն մինչեւ այսօր միայն Հեթումեան շրջանին եւ այն 1226 – 27, եւ 1239, 1243 թուականներով օժտուած այդ կարգի դրամներու կը հանդիպինք։ Փոքրիկ դէպք մը չէր երբ 1199ին Ղիասեդդին Քըլըճ Ասլան կ'ապաստանէր Լեւոնի մօտ։ Նոյնպէս Կեսարիայի պաշարումի առթիւ կնքուած երկակողմանի բարեկամական դաշինքը Լեւոնի եւ Իզզեդդինի միջեւ (1211)։ Դարձեալ երբ Լեւոն Ա. Հայոց թագաւորը 1216ին Անտիոքի գրաւումով զբաղած էր, Իզզեդդին Քայքաւուս, անշուշտ Բոհեմունդի դրդումով, յարձակում կը գործէր Կիլիկիայի վրայ եւ գերի կը վարէր Հայ բանակի սպարապետն ու մի քանի Հայ զօրավարներ, որոնց ազատութեան համար, մէկուկէս տարի երկար ձգձգումէ յետոյ, հազիւ հաւանեցաւ Լեւոն, Սմբատի [1] համեմատ, Լուլուա եւ Լաւզատ բերդերը զոհել, «իսկ յորժամ էառ զԱնտիոք, Քայքաւուզ սուլտանն Իկոնիոյ, խռովեցաւ ընդ նմա, եւ եկն բազում զօրօք ի վերայ Կապնուն, նեղեաց զնա եւ ոչինչ կարաց առնել. ապա յազդմանէ չարին կալան զգունդստապլն Հայոց Կոստանդին, զորդի քեռոյն թագաւորին Լեւոնի, եւ զԿոստանդին որդի Հեթմոյ, եւ զԿիռ Սահակ, զտէրն Մաղվայոյ եւ այլ իշխանս ընդ նոսա, եւ գնացին ի տեղի իւրեանց։ Իսկ ի թուին ՈԿԸ ետ թագաւորն Լեւոն զբերդն Լուլուա եւ զԼօզատի եւ ազատեաց զկայանաւոր իշխանսն»։ Իբն Բիբիի համեմատ Լեւոն յանձն կ'առնէր անոնց ազատութեան համար տարեկան վճարել քսան հազար դենար եւ 500 ձիաւոր ուղարկել պատերազմի պարագային իբր օգնական ոյժ։ Այս կարեւոր դէպքերուն համար ոչ մի երկլեզուեան դրամ հասած է մեր ձեռքը։

Մինչդեռ, երբ կրկին Անտիոքի իշխանին Բոհեմունդ Դ.ի սադրանքներով Ալայեդդին Քայքոբադ 1225ին՝ աշնան Կիլիկիա կ'արշաւէ եւ այդ առթիւ բազմաթիւ բերդեր եւ ամրոցներ կը գրաւէ, Կոստանդին՝ Հեթումի հայրը, խոհեմութիւն կը համարի սուլտանին հետ համաձայնութեան գալ. ըստ Իբն Բիբիի՝ հետեւեալ պայմաններով. «Ամէն տարի 1000 ձիաւոր եւ 500 աղեղնաւոր ուղարկել, 2· դրամները սուլտանին անունով կոխել տալ (զարդարել), 3· պատերազմի տուգանքը կրկնապատիկով վճարել, գրաւուած ծովեզերեայ 30 բերդերն ալ կը մնային սուլտանի գերիշխանութեան տակ, գրեթէ ամբողջ Իսաւրիան (հմմտ. Die Seltschukengeschichte էջ 142)։

Իբն Բիբի, ինչպէս սկիզբը յիշեցինք, իր գործը դրած է իբր դիւցազներգութիւն, այս պատճառով առ հասարակ միակողմանի է, իր դիւցազին՝ մանաւանդ Ալայեդդինի միայն քաջագործութիւնները պերճաշուք կը պատմէ, իսկ պարտութիւնները՝ շատ հարեւանցի։ Սակայն որքան ալ չափազանցուած նկատենք իր տեղեկութիւնները, պատմական իրողութիւն մըն է թէ Հեթում այդ դաշինքի հիման վրայ հրապարակ հանած է այդ երկ-

[2] Սմբատայ Սպարապետի Տարեգիրք. Վենետիկ 1956, էջ 221–222։

լեզուեան դրամները, հաւանաբար այդ դրամով վճարած է պատերազմի տուգանքը.ուստի այդ դրամները, ինչպէս արդէն առ հասարակ կ'ընդունուի, Սիսի մէջ կոխուած են եւ այն՝ այս նոր տեղեկութեան համեմատ, 1226–27, թուին։



ՀԵԹՈՒՄ—ԱԼԱՑԵԴԴԻՆ ՔԱՅՔՈԲԱԴ ԴՐԱՄԸ



ՀԵԹՈՒՄ—ԱԼԱՑԵԴԴԻՆ ԿԻՍԱԴՐԱՄԸ



ՀԵԹՈՒՄ—ՂԻԱՍԵԴԴԻՆ ՔԱՅԽՈՍՐՈՎ ԴՐԱՄԸ



ՀԵԹՈՒՄ—ՂԻԱՍԵԴԴԻՆ ՔԱՅԽՈՍՐՈՎ ԿԻՍԱԴՐԱՄ

Իսկ Հեթում—Քայխոսրով դրամներու մասին Իբն Բիբի որեւէ անկարկութիւն մը չունի։ Կը թուի թէ Ալայեդդինի մահէն յետոյ, նոյն դաշնադրութիւնը վերահաստատուած է անոր յաջորդին օրով եւ այդ առթիւ տպուած Հիջրէթ 637 = 1239 թուին։ Իսկ 641 = 1243 թուակիր դրամները կոխուած պիտի ըլլան Թաթարներու արշաւանքի նախօրեակին, երբ Ղիասեդդին Քայխոսրով հարիւր հազար դենար կը ղրկէր Հեթումի, որպէս զի Հայ եւ Փրանկ այրուձիով օգնութեան դիմէր Բաչուի դէմ։

Երբ սելջուկեան տէրութիւնը Բաչուէն պարտուելով 1243ին, թաթարական խանութեան մէկ հարկատուն դարձաւ, այնուհետեւ իր դերիշխող դիրքն ալ կորսնցուց։ Եւ մենք այլ եւս չենք հանդիպիր, նոյն իսկ Հեթումի շրջանին 1244–70, ոչ մի երկլեզուեան դրամի։

Այստեղ կը ներկայացնենք Վիեննայի Մխիթ. թանգարանի Ռուբինեան դրամներու հաւաքածոյէն այդ երկլեզուեան դրամներէն մէկ մէկ նմոյշ։

Հ. Գ. ՏԷՐ–ՊՕՂՈՍԵԱՆ

---

# ԽԱՐԲԵՐԴԻ ԳԱՒԱՌԻ ՎԱՆՔԵՐԸ

## Զ. ՉՄՇԿԱԾԱԳԻ ՎԱՆՔԵՐԸ

### 1. ԵՐԵՔ ՄԱՆԿՈՒՆՔԻ ՎԱՆՔԸ

Չմշկածագի Պռասրենք գիւղի մերձ, այժմ աւերակոյտ...։ Ունինք սա Յիշատակագրութիւնը անոր մասին. «Յիշեսջիք զանտեսն Ոսկլիկն որ ետ կազմել զսուրբ Աւետարանս. իւր եւ իւր այրոջն Վարդանին եւ հաւրն Թոմասին եւ մաւրն Խրմիզին եւ մեծ պապուն Քուլէֆին. եւ մեծ մաւրն Թմլան եւ եղբարցն Պետրոսին եւ Երանէլին եւ հաւր եղբարցն տէր Ներսէսին եւ Խոսրովին եւ իւր որդւոյն հոգւոյն եւ եդ յիշատակ ի գիւղն Հազդուկ (Պռաստենք) ի դուռն Երեք մանկանց, որ է ի Չմշկածագ» (Բիւզանդիոն 1906 Թ. 3014)։

### 2. ԶՕՐԱՎԱՐԻ ՎԱՆՔԸ

Չմշկածագի Օձ գիւղի մերձ. շատոնց շարաթացած վանքերու շարքին մէջ անցած, ուխտատեղի[1] (Բիւզանդիոն 1906 Թ. 3014)։

### 3. ԽԱՐՏԻՇԱՐԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԵՒ Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔԸ

Սրուանձտեանց կը գրէ «Չմշկածագ թէ ի քաղաքն եւ թէ ի գիւղօրայս ունի աւերակներ, արժանի հետաքրքրութեան, հանգած եկեղեցիներ եւ վանքեր ալ կան. յորս երեւելի է Խարտիշարու Ս. Կարապետի վանքն, որոյ շէնքին մնացորդը դեռ հոյակապ եւ գեղեցկակերտ իրաւամբ կը գրաւէ մարդոյ հիացումն եւ արցունք կը քամէ տեսողաց աչքերէն. ուր ԻՋ վարդապետք երբեմն բաց ի սարկաւագներէ, տիրացուներէ եւ սպասաւորներէ, ճշմարիտ դպրութեան վանք մը եղեր է. իւր բազմաթիւ ձեռագիրներ եւ անօթներ տեսանք Յաղթուկ գեղը» (Թորոս Աղ-

---

[1] Զօր(ա)վ(ա)րի վանք՝ Չորրորդ Հայքի մէջ Հասար–Մանսուր (Հարսն Մաղ) գաւառին մէջ, ուր ժամանակ մը Փիլարտու բնակած է։ (Մ. Ուռհայեցի, Գամ. էջ 248, Ալիշան, Հայապատում Բ. էջ 213)։